Լոնտոնի թերթերը կը գրեն թէ արեւմտեան Գերմանիոյ 100.000 ամերիկացի զինուորները զօրահանդէս մը սարքած են, իբրեւ «համր պատասխան» խորհրդային իշխանութեանց սպառնալիքներուն :

✕ Արեւմտեան Եւրոպայի հրամանատարութեան սպայակոյտի պետը, զօր. Կրունթըր, յայտարարեց թէ ծովակալ Ֆեչլըրի վերագրուած տեղեկագիրը պարզապէս մէկ պատճէնն է 1950 Սեպտեմբերին հրատարակուած լրագրական ուսումնասիրութեան մը, « չարամիտ յաւելումներով »: Զօրավարը վստահ է թէ Եւրոպան կրնայ պաշտպանուիլ :

✕ Զօր. Այզընհաուըր Լոնտոն այցելելով, տեսակցեցաւ Չըրչիլի հետ: Փարիզ վերադառնալէ առաջ, յայտարարեց թէ «կարճատեսութիւն պիտի ըլլար միայն զինուորական ուժին ապաւինիլ, խաղաղութիւնը պաշտպանելու համար: Անհրաժեշտ են նաեւ հոգեկան կորով, միութիւն եւ տնտեսական ուժ» :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԲՈՒՌՆ ԿՌԻՒ ՄԸ ծագեցաւ ուրբաթ իրիկուն համանավարներու եւ ազգայնական խումբի մը միջեւ, Փարիզի Ամպիկիւ թատրոնին մէջ, ուր կը տրուէր «Գնդ. Ֆոսթեր կ'ընդունի յանցանքը» թատերախաղին ներկայացումը: Թատերախաղը կը նախատէր Ամերիկացիները, Ֆրանսական բանակը եւ Հնդկաչինի պատերազմը ու աւելէ առաջ արգիլուած էր: Թերթերը կը գրեն թէ առաջին մասին աւարտումէն վերջ, խումբ մը ազգայնականներ բեմ խոյանալով, տակնուվրայ ըրին կահկարասիները, հրմշտկեցին դերասանները, մինչ պատշգամներէն արտասովոր ռումբեր կը տեղացնէին: Համայնավարները դիմադարձեցին, թատրոնին ապակիները խորտակուեցան : Կռիւը փոխադրուեցաւ փողոց: Քանի մը ոստիկաններ միջամտեցին, օգնական ուժեր հասան, որոնք պարպեցին սրահները: Կռիւը շարունակուեցաւ Ռեփիւպլիքի յարակից փողոցներուն մէջ: Ոստիկաններէն երեք, իսկ ցուցարարներէն շատ մը վիրաւորներ կան, բոլորն ալ թեթեւ :

ԲԱԶՄԱԹԻՒ ձերբակալութիւններ տեղի ունեցած են Թունուզի մէջ, ինչպէս կը հաղորդեն իրազեկ թերթեր: «Թշնամի տարրեր»ու դանդուածային տարագրութիւնը կը շարունակուի, կ'ըսուի թէ մինչեւ 200.000 հոգի պիտի աքսորուին Թունուզէն, բայց արեւմտեան շրջանակները չափազանցուած կը նկատեն այս թիւը :

ՓԱՐԻԶԻ ՏՕՆԱՎԱՃԱՌԸ բացուեցաւ Փորթ տը Վէրսայլի մէջ շաբաթ առտու ժամը 9ին, ճարտարարուեստի նախարարին հովանաւորութեամբ: Կարգով պիտի այցելեն միւս նախարարները, իսկ երեքշաբթի օր Նախագահ Օրիոլ: Մուտքը 200 ֆրանք է, գնորդներու տոմս ունեցողներուն համար 100 ֆրանք: 11.000 առեւտրական տուներ կը մասնակցին տօնավաճառին, 1600ը օտար: Աւելի քան 3ուկէս միլիոն այցելու կը սպասուի : Ցանկին գլուխը կը գտնուին Գերմանները, 306 ցուցադրողներով: (Իտալիա 283, Ամերիկա 162, Անգլիա 154 եւն.) :

ՀԻՒՍ. ՔՈՐԷԱՅԻ գերիներէն 15.000 հոգի, որոնք Ճափոն կը գտնուին, աղերսագիր մը ուղղելով, խնդրեցին հայրենիք չվերադարձնել զիրենք: Աղերսագիրը կը բաղկանայ 1000 թերթերէ : — Զինադադարի բանակցութիւնները նորէն վտանգուած են :

161 ԾԵՐԱԿՈՒՏԱԿԱՆՆԵՐ պիտի ընտրուին այսօր, ամբողջ Ֆրանսայի մէջ: Թեկնածուներու թիւն է 710: Ծերակոյտը (Հանրապետութեան խորհուրդ) կը բաղկանայ 320 անդամներէ, որոնց մէկ երրորդը կը նորոգուի չորս տարին անգամ մը:

ԾԱՆՕԹ ԿՌՓԱՄԱՐՏԻԿ Հրանտ Ղազարեան անցեալ կիրակի մրցեցաւ Սէնթ Ավոլի մէջ (գերմանական սահմանագլուխ) լեհ միջին ծանրութեան ախոյեաններէն Պէնազաքի դէմ: Ութ շըրջան տեւող այս մրցումի ընթացքին, հակառակ մեր հայրենակցին գերակշիռ առաւելութեան, մաչ - նիւլ յայտարարուեցաւ: Ինչպէս կը յիշուի երիտասարդ կռփամարտիկը Լիբանանի Հ. Մ. Ը. Մ.ի ամէնէն կարկառուն անդամներէն մէկն է, կռփամարտի ախոյեան Սուրիոյ եւ Լիբանանի Փարիզէն մեկնելէ առաջ, իր ջերմ շնորհակալութիւնները կը յայտնէ Ալֆորվիլի Հ. Մ. Ը. Մ.ին, որ հանդէսով մը պատուած էր զինքը եւ չքանշան մը նուիրած իրեն: Վաղը կը վերադառնայ Պէյրութ:

## «Համազգայինի»Լսարան, Մարսէյլ

Նիւթ.— «Հայ յեղափոխութեան ծագման պատճառները»: Այս երեքշաբթի ժամը 21ին, Palet d'Orի մէջ, (80, La Canebière):

Յեղափոխութեան պաշտպանողականը կը ներկայացնեն Պ. Բ. ՄԻԼՏՈՆԵԱՆ եւ Պ. Տ. ԹԱԴՈՅԵԱՆ: Ընդդիմախօսներու մասնակցութիւնը ապահովուած է: Խօսք կը տրուի նաեւ ներկաներուն :

## Վասպուրականի Հերոսամարտի

### 37ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Վասպուրականի Հայր. Միութեան, կիրակի 18 Մայիս ժամը 15էն մինչեւ կէս գիշեր, Սալ Մաղընոյի մէջ, 88 rue d'Aubagne: Մասնակցութեամբ քաղ. կուսակցութիւններու, Ազգ., Բարեգործ. եւ Հայր բոլոր միութիւններու:

Կը նախագահէ Միութեան ատենապետ Պ. ՎԱՐԴԱՆ ՊԱՆԴԻԿԵԱՆ:

Ճոխ պիւֆէ, մատչելի գիներով :

ՎԻՃԱԿԱԽԱՂ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի վերջին վիճակախաղին թիւ 2277 Գոյամարտ օրացոյցը կը շահի, Ա. Շանթի գիրքերը կամ օգանաւով ճամբորդութիւն մը :

Դիմել Հ. Յ. Դ. Նոր Սերունդ Մարսէյլի Շրջ. վարչութեան.— Boyadjian, 35 Ave. Lieutenant Fine, La Veste, Մարսէյլ :

ՆՈՒԷՐ.— Մարսէյլէն Տէր եւ Տիկին Յակոբ Տոլպաշեան, Օր. Վ. Մինասեանի եւ Պ. Ա. Թոքաթլեանի նշանախօսութեան առթիւ փոխան ծաղկեպսակի 4000 ֆրանք կը նուիրեն Հ. Յ. Դ. Փարիզի Տան հիմնադրամին, 1000 ֆր. ալ «Յառաջ»ի տարածման: Ստանալ «Յառաջ»էն :



## ՊՈՆՏՈՍՑԻՆԵՐՈՒՆ ՕՐԸ

Նախաձեռնութեամբ Տրապիզոնի նահանգի (Պոնտոս) Հայր. Միութեան: Հովանաւորութեամբ Նախկին Հայ Ռազմիկներու եւ Կամաւորներու Միութեան: 25 Մայիս, կիրակի ժամը 15էն կէս գիշեր, Cercle Militaireի սրահներուն մէջ, Place St. Augustin, métro St. Augustin :

Մանրամասնութիւնները յաջորդով :




Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

**Le Gérant : A. NERCESSIAN**


## ՑՈՒՑԱՏԵՏՐ

«ՄՈՒՐԱՏ» Ուսումնասիրացի ժողովը այս կիրակի ժամը 4ին, Իսիի Խրիմեան սրահը, rue de la Défense: Բոլոր անդամներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Սեւանի Կապոյտ Խաչի մասնաճիւղիս հանդէսը Յունիս 8ին :

Պ. Ա. ՍԱՖՐԱՍՏԵԱՆԻ երկրորդ դասախօսութիւնը՝ այս երկուշաբթի ժամը 18.30ին, Հայ Ուս. Տան մէջ, 57 Bld. Jourdan:

